ՀԿ(Բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 11—12

ՀՈՒՆԻՍ 1946 Թ.

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԹԵՐԹԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 11—12

ՀՈՒՆԻՍ 1946 Թ.

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԹԵՐԹԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ (ԲՈԼՇԵՎԻԿՆԵՐԻ) ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ, ՍՍՌ ՄԻՈՒԹՅԱՆ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻ ԵՎ ՍՍՌ ՄԻՈՒԹՅԱՆ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ԿՈՂՄԻՑ

*Համամիութենական Կոմունիստական (բոլշևիկների) Պարտիայի Կենտրոնական Կոմիտեն, ՍՍՌ Միության Մինիստրների Սովետը և ՍՍՌ Միության Գերագույն Սովետի Նախագահությունը մեծ վշտով հայտնում են պարտիային և Սովետական Միության բոլոր աշխատավորներին, որ հունիսի 3-ին ժամը 10 անց 05 րոպեին երկարատև և ծանր հիվանդությունից հետո վախճանվեց մեր պարտիայի և Սովետական պետության անվանավոր գործիչ, ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Քաղբյուրոյի անդամ, ՍՍՌ Միության Գերագույն Սովետի Նախագահության անդամ ընկեր ՄԻԽԱՅԻԼ ԻՎԱՆՈՎԻՉ ԿԱԼԻՆԻՆԸ։*

*Իր ամբողջ գիտակցական կյանքը ընկեր*



*ԿԱԼԻՆԻՆԸ նվիրել է աշխատավորների գործի համար, կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարին։ Ընկեր Կալինինը եղել է Լենինի և Ստալինի հավատարիմ զինակիցը, բոլշևիկյան պարտիայի և Սովետական պետության ամենաակտիվ կառուցողներից և ամենաականավոր ղեկավարներից մեկը։*

*Քանյոթ տարի շարունակ ՄԻԽԱՅԻԼ ԻՎԱՆՈՎԻՉ ԿԱԼԻՆԻՆԸ անձնուրաց կերպով աշխատել է Սովետական պետության Գերագույն օրգանի ղեկավարի պոստում, բոլոր ուժերը նվիրելով սոցիալիստական Հայրենիքի ամրապնդման, մեր երկրի բանվորների, գյուղացիների ու ինտելիգենցիայի դաշինքի և Սովետական Միության ժողովուրդների բարեկամության ամրապնդման գործին։*

*Ընկեր ԿԱԼԻՆԻՆԻ, մեծ ռևոլյուցիոների և սոցիալիստական պետության կառուցողի ամբողջ եռուն կյանքը և բեղմնավոր գործունեությունը հանդիսանում է ժողովրդին անձնվիրաբար ծառայելու և Հայրենիքի նկատմամբ ամենախոր նվիրվածության օրինակ։ ՄԻԽԱՅԻԼ ԻՎԱՆՈՎԻՉ ԿԱԼԻՆԻՆԸ Լենինի-Ստալինի գործին իր հավատարմությամբ, ժողովրդական մասսաներին իր մոտիկությամբ և նրանց շահերի խոր ըմբռնողու-*

թյամբ, ժողովրդի բարօրության մասին իր անխոնջ հոգատարությամբ արժանացել է բոլոր աշխատավորների անկեղծ հարգանքին և ջերմ սիրուն։

Համամիութենական Կոմունիստական (բոլշևիկների) Պարտիայի Կենտրոնական Կոմիտեն, ՍՍՌ Միության Մինիստրների Սովետը և ՍՍՌ Միության Գերագույն Սովետի Նախագահությունը համոզված են, որ ՄԻԽԱՅԻԼ ԻՎԱՆՈՎԻՉ ԿԱԼԻՆԻՆԻ, մեր երկրի ժողովուրդների ազատության ու երջանկության համար, Սովետական Հայրենիքի բարգավաճման համար մղված նրա անխոնջ պայքարի հիշատակը կոգեշնչի բոլոր կոմունիստներին ու անպարտիականներին, բոլոր բանվորներին, գյուղացիներին ու ինտելիգենցիային անձնուրաց աշխատանքի հանուն սոցիալիստական պետության հետագա ամրապնդման։

ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ (ԲՈԼՇԵՎԻԿՆԵՐԻ) ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵ

ՍՍՌ ՄԻՈՒԹՅԱՆ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏ

ՍՍՌ ՄԻՈՒԹՅԱՆ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅՈՒՆ

3 հունիսի 1946 թվի

---

# ՄԻԽԱՅԻԼ ԻՎԱՆՈՎԻՉ ԿԱԼԻՆԻՆ

Հունիսի 3-ին, ծանր ու երկարատև հիվանդությունից հետո, վախճանվեց կոմունիստական պարտիայի և սովետական պետության հիմնադիրներից և ականավոր ղեկավարներից մեկը՝ ընկեր ՄԻԽԱՅԻԼ ԻՎԱՆՈՎԻՉ ԿԱԼԻՆԻՆԸ։

Միխայիլ Իվանովիչ ԿԱԼԻՆԻՆԸ ծնվել է 1875 թվին Տվերի նահանգի (այժմ Կալինինի մարզի) գյուղացու ընտանիքում։ 18-ամյա պատանի ԿԱԼԻՆԻՆԸ որպես բանվոր ընդունվում է Պետերբուրգի «Ստարի Արսենալ» գործարանում։ Երկու տարուց հետո Միխայիլ Իվանովիչը աշխատանքի է ընդունվում Պուտիլովի գործարանում որպես մետաղի խառատ, որտեղ էլ որակավորվում է որպես աչքի ընկնող կաղապարող։ Այդ շրջանում Միխայիլ Իվանովիչը ներգրավվում է բանվորական անլեգալ կազմակերպությունների ռևոլյուցիոն աշխատանքում և Պետերբուրգի պրոլետարիատի մեջ առաջ է քաշվում որպես առաջավոր բանվորներից մեկը։ Պետերբուր-

գի քաղաքական ոստիկանության կողմից ձերբակալվելուց հետո նա աքսորվում է Թբիլիսի, որտեղ ընդունվում է Թբիլիսիի երկաթուղային արհեստանոցները, որպես մետաղի խառատ։ Թբիլիսիի ոստիկանության կողմից հետապնդվելու պատճառով Միխայիլ Իվանովիչն անցնում է Ռևել, որտեղ նա աշխատելով երկաթուղային արհեստանոցներում, ավարտում է աքսորի ժամկետը։ Այնուհետև նա վերադառնում է Պետերբուրգ, որտեղ Թնդանոթի գործարանում աշխատում է որպես կաղապարող։ Այդ ժամանակվանից նա արդեն այլևս չի հեռանում Պետերբուրգից, Պետերբուրգի տարբեր գործարաններում կատարած գործարանային աշխատանքը զուգակցելով բոլշևիկների պարտիայի շարքերում կատարած ռևոլյուցիոն անխոնջ գործունեության հետ, որպես աչքի ընկնող առաջավոր բանվորների և բանվոր դասակարգի քաղաքական ղեկավարներից մեկը։

Ընկեր ԿԱԼԻՆԻՆԸ իր կյանքի 50 տարիները նվիրաբերել է աշխատավոր մասսաների ազատագրության, սոցիալիզմի գործի համար մղվող պայքարին։ Լենինի հետ միասին Մ. Ի. ԿԱԼԻՆԻՆԸ աշխատել է մարքսիստական առաջին ընդհատակյա խմբակներում և



«Բանվոր դասակարգի ազատագրության պայքարի միությունում», Լենինի և Ստալինի հետ ձեռք-ձեռքի տված նա կառուցել է բոլշևիկների պարտիան, ստեղծել բոլշևիկյան «Պրավդա» թերթը, ակտիվորեն մասնակցել սովետական մեծ ռևոլյուցիայի նախապատրաստմանը և իրագործմանը։

1917 թվին Հոկտեմբերյան ռևոլյուցիայից հետո ընկեր ԿԱԼԻՆԻՆԸ դառնում է երիտասարդ սովետական պետության ականավոր ղեկավարներից մեկը։

1919 թվի մարտին ընկեր ԿԱԼԻՆԻՆԸ, Լենինի առաջարկությամբ, ընտրվում է Ռուսաստանի Ֆեդերատիվ Սովետական Ռեսպուբլիկայի գերագույն օրգանի՝ Սովետների Համառուսաստանյան Կենտրոնական Գործադիր Կոմիտեի Նախագահ։

1922 թվի դեկտեմբերին Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության կազմակերպումից հետո ընկեր ԿԱԼԻՆԻՆԸ ընտրվում է Սովետական Միության Գերագույն օրգանի՝ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության (ՍՍՌՄ-ի) Կենտրոնական Գործադիր Կոմիտեի Նախագահի պոստում։

1938 թվի հունվարին Սովետական Միության գերագույն օրգանների վերակազմու-

թյունից հետո ընկեր ԿԱԼԻՆԻՆԸ ՍՍՌՄ Գերագույն Սովետի Առաջին Սեսիայում ընտրվում է Սովետական Միության Գերագույն Սովետի Նախագահության Նախագահ։

Միխայիլ Իվանովիչ ԿԱԼԻՆԻՆԸ իրեն դրսևորեց որպես սովետական պետության Գերագույն օրգանի իմաստուն և փորձված ղեկավար, վաստակելով մեր երկրում համաժողովրդական սեր և ամբողջ առաջավոր մարդկության հարգանքը։

Ռուս մեծ ժողովրդի պանծալի զավակ ընկեր ԿԱԼԻՆԻՆԸ իր ամբողջ փայլուն կյանքը անխզելիորեն կապել էր կապիտալիստական ստրկությունից աշխատավորության ազատագրության գործի հետ։

Քաղաքացիական պատերազմի հաղթական ավարտումից հետո սոցիալիստական խաղաղ շինարարության տարիներին Մ. Ի. ԿԱԼԻՆԻՆԸ բոլոր ուժերն ու գիտելիքները, իր ամբողջ հարուստ կենսափորձը նվիրում էր սովետական հասարակական ու պետական կարգի ամրապնդման գործին։ Լենինի և Ստալինի հավատարիմ զինակից ընկեր ԿԱԼԻՆԻՆԸ անդուլ կերպով պայքարում էր պարտիայի և ժողովրդի թշնամիների դեմ՝ հանուն լենինիզմի հաղթանակի։



Հայրենական մեծ պատերազմի տարիներին ընկեր ԿԱԼԻՆԻՆԸ, արդեն ծանր հիվանդ լինելով, անձնվիրաբար աշխատում էր սովետական պետության Գերագույն օրգանի ղեկավարի պոստում, իր բոլոր ուժերը նվիրաբերելով Սովետական Միության հաղթանակի գործին՝ ընդդեմ գերմանական և ճապոնական ագրեսորների։ Սովետական մարդիկ հիշում են ընկեր ԿԱԼԻՆԻՆԻ հայրենասիրական բոցաշունչ ելույթները Հայրենական պատերազմի օրերին, որոնք մեր բանակին և ժողովրդին հաղթանակի հավատ էին ներշնչում թշնամու դեմ։

Միխայիլ Իվանովիչ ԿԱԼԻՆԻՆԻ անունը՝ մեր Հայրենիքին անձնվիրաբար ծառայելու և նվիրվածության սիմվոլը՝ անսահմանորեն թանկ է սովետական բոլոր մարդկանց։

Ընկեր Միխայիլ Իվանովիչ ԿԱԼԻՆԻՆԻ գործունեությունը միշտ կհանդիսանա պետական իմաստունության և ժողովրդի հետ անխզելի կապի օրինակ, կոմունիզմի գործին հերոսաբար ծառայելու օրինակ։

Միխայիլ Իվանովիչ ԿԱԼԻՆԻՆԻ՝ մեր Հայրենիքի բոցաշունչ հայրենասերի, կոմունիզմի անսասան մարտիկի, իմաստուն և սրտագին ղեկավարի հիշատակը սովետական

բոլոր մարդիկ հավերժ կպահպանեն իրենց սրտերում։

Գնաս բարով, մեր թանկագին բարեկամ ու մարտական ընկեր։

Գ. ԱԼԵՔՍԱՆԴՐՈՎ — Տ. ԿՈՒԼԱՏՈՎ
Ա. ԱՆԴՐԵԵՎ — Օ. ԿՈՒՈՒՍԻՆԵՆ
Լ. ԲԵՐԻԱ — Գ. ՄԱԼԵՆԿՈՎ
Ա. ԲԵՐԴԻԵՎ — Լ. ՄԵԽԼԻՍ
Փ. ԲՐՈՎԿԻՆ — Ա. ՄԻԿՈՅԱՆ
Ն. ԲՈՒԼԳԱՆԻՆ — Ն. ՄԻԽԱՅԼՈՎ
Ի. ՎԱՐԵՍ — Վ. ՄՈԼՈՏՈՎ
Ա. ՎԱՍԻԼԵՎՍԿԻ — Ա. ՄՈՒՄԻՆՈՎ
Կ. ՎԵՐՇԻՆԻՆ — Ն. ՆԱՍՏԱԼԵՎԻՉ
Ն. ՎՈԶՆԵՍԵՆՍԿԻ — ՅՈՒ. ՊԱԼԵՑԿԻՍ
Կ. ՎՈՐՈՇԻԼՈՎ — Մ. ՊԱՊՅԱՆ
Ա. ԳՈՐԿԻՆ — Ն. ՊԱՏՈԼԻՉԵՎ
Մ. ԳՐԵՉՈՒԽԱ — Գ. ՊՈՊՈՎ
Ա. ԺԴԱՆՈՎ — Ա. ՊՈՍԿՐԵԲԻՇԵՎ
Լ. ԿԱԳԱՆՈՎԻՉ — Պ. ՊՈՍՊԵԼՈՎ
Ա. ԿԱԶԱԿՊԱԵՎ — Մ. ՌՈԴԻՈՆՈՎ
Մ. ԿԱՍՈՒՄՈՎ — Ի. ՍՏԱԼԻՆ
Ա. ԿԻՐԽԵՆՇՏԵՅՆ — Գ. ՍՏՈՒՐՈՒԱ
Ա. ԿՈՍԻԳԻՆ — Ա. ԽՐՈՒԼԵՎ
Ի. ԿՈՆԵՎ — Ն. ԽՐՈՒՇՉԵՎ
Ա. ԿՈՒԶՆԵՑՈՎ — Մ. ՇԱԳԱԴԱԵՎ
Վ. ԿՈՒԶՆԵՑՈՎ — Ն. ՇՎԵՐՆԻԿ
Ն. ԿՈՒԶՆԵՑՈՎ — Մ. ՇԿԻՐՅԱՏՈՎ

# ԾԱՎԱԼԵՆՔ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆ ՀԱՆՈՒՆ ՍՏԱԼԻՆՅԱՆ ՆՈՐ ՀՆԳԱՄՅԱ ՊԼԱՆԻ ԿԱՏԱՐՄԱՆ ՈՒ ԳԵՐԱԿԱՏԱՐՄԱՆ

*Մայիսի 15-ին հրապարակվեց Մակեևկայի մետալուրգների դիմումը երկրում ստալինյան նոր հնգամյակի կատարման ու գերակատարման համար Համամիութենական սոցիալիստական մրցություն կազմակերպելու մասին։*

*Մետալուրգների դիմումը լայն արձագանք գտավ ամբողջ երկրում։ Իրար ետևից Համամիութենական սոցիալիստական մրցություն կազմակերպելու վերաբերյալ դիմումներ հրապարակեցին տեքստիլշչիկները, երկաթուղայինները, սննդի և արդյունաբերության բազմաթիվ այլ ճյուղերի աշխատողները։*

*Հնգամյակը կատարելու և գերակատարելու համար մրցություն կազմակերպելու նախաձեռնությունը արժանացավ մեր ան-*

ծայրածիր Հայրենիքի բազմամիլիոն աշխատավորների ջերմ հավանությանը։

Սոցիալիստական մրցության լայն ծավալումը հնարավորություն կտա մեր երկրի աշխատավորներին է՛լ ավելի մեծ չափերով դրսևորել իրենց ստեղծագործական նախաձեռնությունը, տեղից շարժելու և առաջավորների աստիճանին բարձրացնելու ետ մնացող բնագավառները, աննախընթաց չափերով ավելացնելու աշխատանքի արտադրողականությունը։

Թերթերը ամեն օր բազմաթիվ փաստեր են տպագրում այն մասին, թե ինչպես մեր արտադրական ձեռնարկությունները և նրանց բանվորները, մեր կոլխոզներն ու կոլխոզնիկները մտնում են մրցման մեջ, պարտավորություններ վերցնում և պայքարում այդ պարտավորությունների կատարման ու գերակատարման համար։

Այժմ խնդիրն այն է, որ մեր պարտիական, պրոֆմիութենական, կոմերիտական կազմակերպությունները, մինիստրություններն ու ձեռնարկությունների ղեկավարները լայն ընթացք տան ծավալվող մրցությանը, այն հաշվով, որպեսզի ժամկետից շուտ կատարվեն ու գերակատարվեն ընթացիկ աշխատանքների պլանները։



Համամիութենական սոցիալիստական մրցության ծավալման բնագավառում մեծ դեր է վիճակված կատարելու մեր ագիտատորներին։

Արտադրության մեջ աշխատող ագիտատորը առաջինը պետք է մտնի մրցության մեջ և բոլորից շուտ ու բոլորից բարձր ցուցանիշներով կատարի իր ընթացիկ առաջադրանքները։ Նա իր անձնական օրինակով պետք է վարակի մյուսներին և անդադրում ագիտացիա մղի՝ բոլոր աշխատավորներին արտադրության մեջ առաջավորներ դարձնելու համար։

Ահա հենց այդպիսի ագիտատոր է Երևանի օճառի գործարանի ավագ վարպետ Մուրադ Գևորգյանը։ Նա գործարանի կառուցման առաջին իսկ օրից աշխատում է այնտեղ։ Աշխատում է բարեխղճորեն, չխնայելով իր կարողությունն ու շնորհքը։

Նրա խոսքը ծանրակշիռ է, հեղինակավոր, որովհետև նա արտադրության մեջ քայլում է ամենքից առաջ, խորապես ճանաչում է գործարանի կյանքն ու մարդկանց։ Երբ մրցության հարցն էր դրված, նա ասաց. եկե՛ք, ընկերնե՛ր, մրցության մեջ մտնենք։ Ու ինքը մտավ առաջինը։

Նրա օրինակին հետևեցին գործարանի մյուս աշխատողները։

Մուրադ Գևորգյանի օրինակը եզակի չէ։ Մենք մեր ռեսպուբլիկայի բոլոր գործարաններում, սովխոզներում և կոլխոզներում ունենք շատ այդպիսի ազնիվ մարդիկ, որոնք իրենց անձնական օրինակի ուժով վիթխարի հեղինակություն են ձեռք բերել ամենալայն մասսաների մեջ։ Նրանց ձայնին ունկնդրում են հազարները և ոգեշնչված պայքարի մեջ մտնում՝ հանուն արտադրական առաջադրանքների կատարման ու գերակատարման։

Հնգամյա պլանի կատարման ու գերակատարման համար ծավալվող սոցիալիստական մրցության հաջող կազմակերպումը արտադրական մեծ հաղթանակներ կբերի մեր երկրին։

Դրա լավագույն գրավականն է մեր մասսաների մեջ առաջացած այն մեծ խանդավառությունը, որ դրսևորում են նրանք իրենց ամենօրյա արտադրական առաջադրանքների կատարման համար մղվող պայքարում։



Ստալինյան չորրորդ հնգամյա պլանը մեր աշխատանքի և պայքարի մարտական ծրագիրն է։ Կատարելով այդ ծրագիրը մենք մեր Հայրենիքը կդարձնենք է՛լ ավելի հզոր, է՛լ ավելի ծաղկուն։

# ԱՌՈՂՋԱՊԱՀՈՒԹՅՈՒՆԸ ՆՈՐ ՀՆԳԱՄՅԱԿՈՒՄ

Սովետական իշխանության գոյության տարիներին և առանձնապես ստալինյան երեք հնգամյակների ընթացքում, վիթխարի աշխատանք է կատարված մեր ռեսպուբլիկայում ժողովրդական առողջապահության զարգացման բնագավառում:

Մարդու, աշխարհի այդ ամենաթանկ կապիտալի, առողջության պահպանման ուղղությամբ մենք ձեռք ենք բերել մեծ հաջողություններ:

Ստալինյան նոր հնգամյա պլանը փայլուն հեռանկարներ է բաց անում մեր ժողովրդական տնտեսության առաջ: Այդ պլանը լուրջ ու պատասխանատու խնդիրներ է առաջադրում մեզ, որոնք մենք պարտավոր ենք լուծել առաջիկա հինգ տարիների ընթացքում:

Այդ խնդիրներից կարևորներն են՝ մեր բնակչության աճի բարձրացումը, ընդ-



հանուր և մասնավորապես թոքախտից առաջացող մահացության, չարորակ ուռուցքների, ինֆեկցիոն հիվանդությունների, նյութերի փոխանակության և արյան շրջանառության հիվանդությունների նվազեցումը, բնակչության և առաջին հերթին երիտասարդ բանվորների ու դպրոցականների ֆիզիկական զարգացման ամրապնդումը: Նոր բնակավայրերի և արդյունաբերական ձեռնարկությունների շինարարության ասպարեզում սանիտարական-առողջապահական նորմաների մշակումը, ինչպես և հսկողությունը դրանց կատարման նկատմամբ, հասարակական սննդի կազմակերպումը գիտական-առողջապահական սկզբունքների հիման վրա, պարազիտար տիֆերի վերացումը, մալարիայի առավելագույն նվազեցումը և Հայրենական պատերազմի հաշմանդամների աշխատունակության առավելագույն վերականգնումը— ահա այն հիմնական խնդիրները, որոնք դրված են առողջապահության առաջ և պետք է լուծվեն չորրորդ հնգամյակում:

Չորրորդ հն, մյակում վճռական դեր պետք է խաղ[illegible] հետևյալ բուժհիմնարկությունները:

Կանանց կոնսուլտացիաները մեծ դեր են խաղալու բնակչության բնական աճը բարձրացնելու ասպարեզում: Կանանց կոնսուլտացիաներ կկազմակերպվեն բոլոր շրջանային կենտրոններում և բանվորական ավաններում, նրանց թիվը կհասնի 84-ի, այսինքն կաճի 45 տոկոսով: Կանանց կոնսուլտացիաները բարելավելով իրենց աշխատանքի որակը, կկարողանան կանխել հղիության և ծննդաբերության պաթոլոգիան և դրանով իսկ կնվազեցնեն վաղաժամ ծննդաբերության տոկոսը, օրապակասությունը, ամլությունը (չբերություն), ծննդաբերության հետևանք հանդիսացող գինեկոլոգիական հիվանդությունները:

Բնակչության մանկաբարձական-գինեկոլոգիական օգնությունը ընդլայնելու նպատակով ըստ հնգամյակային պլանի նախատեսվում է հնգամյակի վերջում ռեսպուբլիկայի քաղաքներում յուրաքանչյուր 10 հազար բնակչի համար ունենալ մեկ մանկաբարձ-գինեկոլոգ: Հնգամյակի վերջին այդ քաղաքների յուրաքանչյուր հազար հոգուն ծննդատներում հատկացվելու է մեկ մահճակալ, որը հնարավորություն կտա բոլոր ծննդկաններին ապահովել բուժօգնու-



թյամբ: Գյուղերում ինչպես շրջանային հիվանդանոցների, այնպես էլ կոլխոզային ծննդատների մահճակալների թիվը կավելանա երկու անգամ:

Հնգամյակային պլանում զգալի տեղ են գրավում երեխաների բուժսպասարկման հարցերը: Այդ սպասարկումը իրագործում են՝ մանկական կոնսուլտացիաները, մանկական պոլիկլինիկաները և մանկամսուրները: Մանկական կոնսուլտացիաների աշխատանքը կառուցվելու է տեղամասային սկզբունքով և դրանով իսկ սիստեմատիկ բժշկական հսկողություն կասհմանվի մինչև չորս տարեկան երեխաների նկատմամբ: Մանկաբուժին օգնելու համար առանձնացվում են երկու խնամող քույրեր, որոնք ոչ միայն կատարելու են ընդհանուր սանիտարա-լուսավորական աշխատանքը՝ մայրերին սովորեցնելով երեխաներին խնամելու հիմնական ձևերը, այլև ակտիվորեն աջակցելու են մորը կուլտ-կենցաղային օգնություն ստանալու գործում: Դրա հետ միաժամանակ պլանով նախատեսվում է ընդլայնել մանկական կոնսուլտացիաներում երեխաներին ցույց տրվող մասնագիտական օգնությունը: Հնգամյակի վերջում մանկական կոնսուլտա-

ցիաների թիվը կավելանա 68 տոկոսով։

Պլանը նախատեսում է 4-ից մինչև 14 տարեկան երեխաներին ցույց տրվող բուժօգնության հետագա ընդլայնումը և բարելավումը։ Հնգամյակի վերջում մանկական պոլիկլինիկայի կամ ընդհանուր պոլիկլինիկայի մանկական բաժանմունքի յուրաքանչյուր տեղամասային բժիշկ իր տեղամասում սպասարկելու է 1800-ից մինչև 2100 երեխայի։ Դրա հետ միասին նախատեսվում է բուժօգնության հատուկ տեսակների զգալի ավելացում։

Ելնելով այն բանից, որ չորրորդ հնգամյակում առաջվա նման զգալի դեր է խաղալու կանանց աշխատանքը, նախատեսվում է մանկամսուրների հետագա զարգացումը, որոնք պետք է ապահովեն ոչ միայն երեխայի ճիշտ խնամքը և սնուցումը, ու դրանով իսկ պետք է նվազեցնեն մանկական հիվանդությունները ու մահացությունը, այլև պետք է մորը ազատեն արտադրության մեջ աշխատելու ժամանակ երեխաների հոգսից և նրան պետք է հնարավորություն տան ակտիվորեն մասնակցել սոցիալիստական շինարարությանը։ Ռեսպուբլիկայի մանկամսուրներում տեղերի ընդհանուր քանակը 1950



թվի վերջում կհասնի 7200-ի։ Նախատեսվում են հատուկ գումարներ մանկական բուժպրոֆիլակտիկ հիմնարկություններ կառուցելու համար։ Հիվանդանոցային օգնությունը, որը հանդիսանում է սովետական առողջապահության կարևորագույն կողմերից մեկը, սոցիալիստական շինարարության տարիներին մեր ռեսպուբլիկայում հսկայական և չտեսնված թափ է ստացել, հանդիսանալով սովետական կառավարության հատուկ հոգատարության առարկան։ Այս բաժնի հիմնական խնդիրը, առաջվա նման, հանդիսանում է աշխատունակության ամենաարագ վերականգնումը՝ հիվանդանոցներում հիվանդներին բարձրորակ բուժման միջոցով, կիրառելով հետազոտման և բուժման նորագույն մեթոդներ՝ բժշկական գիտության վերջին նվաճումների հիման վրա։ Ըստ պլանի ռեսպուբլիկայում հիվանդանոցային մահճակալների թիվը կավելանա և 4800-ից կհասնի 6700 մահճակալի։ Առանձնակի ուշադրություն է դարձվելու գյուղում, արդյունաբերական ձեռնարկություններում մեր աշխատավորության հիվանդանոցային սպասարկման գործին։ Կբացվեն մասնագիտացված նոր բաժանմունքներ՝ զանազան տեսակի

հիվանդությունների բուժման համար։

Գյուղական ու քաղաքային հիվանդանոցների շինարարության համար կատարվող կապիտալ ներդրումները կկազմեն 12 միլիոն ռուբլի։ Ենթադրվում է կառուցել նոր հիվանդանոցներ՝ Իջևանում, Բասարգեչարում, Շամշադինում, Զանգիբասարում, Ղարաբաղլարում, Էջմիածնում, Արտաշատում, Աշտարակում, Ալագյազում և այլ շրջաններում։

Գյուղական բժշկական տեղամասերը ամրապնդելու նպատակով նախատեսվում է լուծել երկու հիմնական խնդիր, այն է՝ կազմակերպել գյուղական բնակչության որքան կարելի է մոտիկ բժշկական օգնությունը և մասնագիտական բժշկական օգնությունը շրջանային կենտրոններում։

Չորրորդ հնգամյակում հակահամաճարակային աշխատանքի կարևորագույն խնդիրներից մեկը հանդիսանում է աղիքային ինֆեկցիաների և մալարիայի նվազեցումը։ Այդ խնդիրները իրագործելու համար կարևորագույն նշանակություն ունեն բնակավայրերի և առաջին հերթին քաղաքների ու արդյունաբերական կենտրոնների կոմունալ բարեկարգման միջոցառումները։ Այս կարևոր միջոցառումը ապահովելու համար չորրորդ



հնգամյակում նախատեսվում է Երևանի միկրոբիոլոգիայի և էպիդեմիոլոգիայի ինստիտուտում 1950 թվին արտադրել ավելի քան 12 հազար լիտր զանազան տեսակ պատվաստանյութ և շիճուկ։

Հայտնի է, որ մեր ռեսպուբլիկայի համար մալարիան հանդիսանում է մեծ չարիք։ Նոր հնգամյա պլանը նախատեսում է ծավալել մի շարք միջոցառումներ (սանիտարական-տեխնիկական, հիդրոմելիորատիվ, բուժ-պրոֆիլակտիկ), որոնց հետևանքով ամենակարճ ժամանակում կոչնչացվեն մալարիայի օջախները և հիվանդության դեպքերը առավելագույն չափով կնվազեցվեն։ Զգալի չափով ավելանում է հակամալարիային հիմնարկությունների ցանցը և բժիշկ մալարիոլոգների թիվը 86-ից կհասցվի 114-ի։

«Մենք ազնվորեն կկատարենք պատերազմի հաշմանդամների նկատմամբ մեր մեծ պարտականությունները» — ընկ. Վ. Մ. Մոլոտովի այս հայտարարության մեջ արտահայտված է սովետական իշխանության հոգատարությունը Հայրենիքի փառապանծ այն պաշտպանների նկատմամբ, որոնք տուժել

են թշնամու դեմ մղված մարտերի օրերին։

Պետությունը հոգ է տանում, որպեսզի լավ հիմունքների վրա դրվի աշխատունակությունը կորցրած ռազմիկների բուժումը։ Մեր բժշկական գիտությունը կուտակել է բուժման մեծ փորձ և մշակել բուժման առաջավոր մեթոդներ։ Այժմ անհրաժեշտ է լայն կերպով ծավալել Հայրենական պատերազմի հաշմանդամների բուժումը և օգնել, որպեսզի որքան կարելի է շատ թվով հաշմանդամներ վերադառնան աշխատանքի։

Պլանով նախատեսված է Երևանում բանալ օրթոպեդիայի և վերականգնողական վիրաբուժության ինստիտուտ, ինչպես նաև պահպանել մի շարք հիվանդանոցներ հաշմանդամների բուժումն ավարտելու համար։

Ստալինյան նոր հնգամյա պլանով նախատեսված առողջապահության աշխատանքների ծրագիրը հսկայական է։ Սակայն առողջապահության օրգանները բազմիցս ապացուցել են իրենց հմտությունը և օպերատիվությունը իրենց առաջ դրված պատասխանատու խնդիրները կատարելու ասպարե-



զում։ Մենք ամեն հիմք ունենք հայտարարելու, որ այս ծրագիրը նույնպես հաջողությամբ կկատարվի։

Գ. ՂԵՎՈՆԴՅԱՆ
(Հայկական ՍՍՌ Առողջապահության մինիստր)

# 1. ԵՐԵՎԱՆԻ ԱԼՅՈՒՄԻՆՇԻՆԸ

*ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման 1946—1950 թ. թ. հնգամյա պլանի մասին օրենքում նշված է՝ Հայկական ՍՍՌ-ում «... կազմակերպել ալյումինի արտադրությունը»։*

*Մեր Ալյումինի գործարանը Սովետական Միությունում իր տեսակների մեջ առաջնակարգներից է լինելու։*

*Շինարարական աշխատանքների ներկա թափը և հսկայական միջոցների ներդրումները վկայում են գործարանի ծավալի և կարողության մասին։ Նախկին ամայի տեղում բարձրացող հսկա գործարանը 1950 թվին մեր հայրենիքին կտա նախատեսված չափով բարձրորակ ալյումին և ուրիշ տեսակի արտադրանք։ Այսպիսով Սովետական Հայաստանը կունենա ալյումինի իր սեփական արտադրությունը։*

*Ապագա հսկա գործարանի բոլոր ցեխերը և կորպուսները իրար հետ կապված կլինեն*



*ասֆալտապատ ճանապարհներով և երկաթուղու ճյուղերով։ Ճանապարհների և մայթերի չորս կողմը տարածվելու են մշտադալար ծառերը։*

*Գործարանը երկաթգծով միանալու է գեղեցիկ և կանաչ ծառերի գրկում փռված բանվորական ավանի հետ։ Բանվորական ավանը քիչ հեռու է գործարանից և սահմանակից է Սևանի գեղեցիկ խճուղուն։ Կառուցվող տները լինելու են մեկ հարկանի և մեկ կամ երկու բնակարանից, յուրաքանչյուր բնակարան ունենալու է իր տնամերձ հողամասը և առանձին մուտքը։ Մինչև ընթացիկ տարվա նոյեմբերի 1-ը Ալյումինշինը շահագործման է հանձնելու 300 սենյակ, այդ թվում մինչև հունիսի վերջը 40։ Կառուցվելու են համրակացարաններ, ակումբ, հյուրանոց, բուժկայան, դեղատուն, մանկապարտեզ, ֆիզկուլտհրապարակ, կարի արհեստանոց և մանկամսուր։ Անց է կացվելու ջրմուղի և կոյուղու ցանց։*

*— Հայրենիքին ավելի շուտ և ավելի շատ ալյումին կտանք,— ահա կառուցողների լոզունգը։*

*Դեռ այս տարվա ձմռանը ալյումինի*

գործարանի կառուցողները ապացուցեցին, որ շինարարությունը սեզոնային գործ չէ. տարվա բոլոր ամիսներին և եղանակներին կարելի է կառուցել, այն էլ արագ, գեղեցիկ և որակով։ Ուրալի ալյումինի գործարանից հրավիրված հմուտ ինժեներները, տեխնիկները և վարպետները օգնեցին երիտասարդ բանվորներին, որակավորեցին նրանց։ Հանդես եկան ռացիոնալիզատորները, գյուտարարները, նովատորները և ստախանովականները, որոնք շատ նորամուծություններ կատարեցին շինարարական աշխատանքների պրոցեսների յուրացման և կատարելագործման բնագավառում։ Գործարանի շինարարության մեջ ստախանովյան մեթոդների արմատացման բրիգադիր Մ. Բիչախչյանի առաջարկով գործածության մեջ դրվեց մեկ ունիվերսալ դազգահ, որն աշխատանքն արագացրեց 180 անգամ, իսկ մեկ ուրիշ դազգահի կատարելագործումով տնտեսվեց 20 բանվորական ձեռք։ Ծավալվեց երկուհարյուրականների և հազարականների շարժումը։ Յուրաքանչյուրն իր աշխատանքով և մտահղացումներով ձգտում է ավելի բարձր արտադրողականության հասնել։ Հայտնի են դարձել Ֆ.



Տիխոնովի, ստախանովական ծեփող Ա. Սարգսյանի անունները, որոնք օրական 5-ից մինչև 10 արտադրական նորմա են կատարում։

Ալյումինշինում գնալ[illegible]ն է ծավալվում Համամիութենական սոցիալիստական մրցությունը։ Մեր ռեսպուբլիկայում նրանք առաջինը արձագանքելով Մակեևկայի Կիրովի անվան Մետալուրգիական գործարանի կոլեկտիվի դիմումին, նոր պարտավորություններ են ստանձնել՝ ժամկետից շուտ շահագործման հանձնել գործարանը, ընթացիկ տարվա շինարարության պլանը կատարել Սովետական Հայաստանի 26-րդ տարեդարձի օրը, ավարտել մեխանիկական ցեխի կառուցումը, ընդլայնել քարհանքերը, բացի գոյություն ունեցող դազգահներից պատրաստել ևս երկու տորֆահատ մեքենա, մի շարք նոր ռացիոնալիզատորական առաջարկությունների կիրառումով տնտեսել մոտ 150 հազար ռուբլի, տրանսֆորմատորա-յուղային տնտեսություն ունեցող սնդիկային վերափոխիչ ենթակայանի կառուցումն ու մոնտաժը ավարտել 1946 թվի նոյեմբերի 7-ին, հասնել աշխատանքի բարձր արտադրողականության, նորմաները

կատարել միջին հաշվով 115 տոկոսով։

Ալյումինի գործարանի կառուցողների խոսքը բոլշևիկի խոսք է և գործից չի տարբերվում։ Ընդամենը մեկ ամիս է անցել այդ պարտավորությունների ստանձնումից, բայց նրանք արդեն արտադրական մեծ վերելք են ստեղծել շինարարության բոլոր ցեխերում։ Պարտիական կազմակերպությունը հաջողությամբ է գլխավորում ծավալվող սոցիալիստական մրցությունը և կառուցողների արտադրական խանդավառությունը։ Կոմունիստները ապահովում են իրենց առաջատար դերը արտադրության մեջ և օրինակ ծառայում անպարտիական բոլշևիկներին։ Պրոպագանդիստները, ագիտատորները և ագիտկոլեկտիվի ղեկավարը սիստեմատիկաբար բովանդակալից զրույցներ և զեկուցումներ են ունենում նոր հնգամյա պլանի օրենքի մասին, միաժամանակ մասսայականացնում են շինարարության ստախանովականների փորձը։

Ալյումինշինի պարտկազմակերպությունը խրախուսում է ռացիոնալիզատորներին և նովատորներին։ Որմնադիրների բրիգադիր Ա. Խեչումյանը դարձել է հազարական և շարունակ մտածում է աշխատանքի ռացիո-



նալիզացման մասին։ Նա միայն այս տարի 3.666 խորանարդ մետր պատ է շարելու, իսկ հնգամյակի ընթացքում՝ 18.300 խորանարդ մետր։ Նա ընթացիկ տարվա առաջին կիսամյակի պլանը մեծ չափով գերակատարել է։

—Եթե մեկ տարի առաջ մենք քարը տաշում էինք ձեռքով,— ասում է Խեչումյանը,— ապա այժմ, մեր շինարարության նովատորների հնարած սեփական տուֆահատ մեքենան օրական տալիս է 40—50 տաշած քար, որի որակը ավելի բարձր է։ Այդ մեքենան փոխարինում է 15—20 բանվորի։ Եթե բետոնը պատրաստվում էր ձեռքով, ապա այդ պրոցեսը նույնպես մեքենայացված է։ Ոչ մի ջանք չեմ խնայում ավելի բարձր արտադրողականության հասնելու համար։

Ալյումինշինի ամբողջ կոլեկտիվը պայքարում է Համամիութենական սոցիալիստական մրցությունից հաղթանակով դուրս գալու և առաջնություն շահելու համար։ Ստեղծված արտադրական բարձր խանդավառությունը է՛լ ավելի կարագացնի գործարանի կառուցումը, կապահովի մեր երկրին ալյումին տալու պատվավոր առաջադրանքի կատարումը։

Խ. ԲԱՐՍԵՂՅԱՆ

# ԱԳԻՏԱՑԻԱ ՍՈՑՄՐՑՄԱՆ ԾԱՎԱԼՄԱՆ ՀԱՄԱՐ

*Երևանի Ջեթ-օճառ կոմբինատի օճառի գործարանի ավագ վարպետ Մուրադ Գևորգյանը միաժամանակ ագիտատոր է։ Նա պարզ ու անպաճույճ, առանց երկարաբանելու, կոնկրետ, կենդանի օրինակներով ու հարցերի խելացի դրումով ունկնդիրներին պատմում է ստալինյան նոր հնգամյակի հոյակապ պլանի մասին, որի կենսագործումը մեր երկիրը կդարձնի է՛լ ավելի հզոր, է՛լ ավելի հարուստ։ Այսօր հարկավոր է խոսել սոցիալիստական մրցության մասին, ու նա կրկին իր շուրջն է հավաքել գործարանի բանվորներին ու պատմում է նրանց.*

*— Հնգամյակի ընթացքում,— ասում է նա,— սննդարդյունաբերության գծով մեր ռեսպուբլիկայում արտադրվելու է 6 հազար տոննա բուսական յուղ, 6.500 տոննա շաքար, 2 միլիոն դեկալիտր գինի, 8.400 տոննա միս, 800 տոննա կենդանական յուղ։ Իսկ մեր գործարանը արտադրելու է 8.000 տոննա օճառ։ Պլանները տրված են, մնում է մեզ գործի վերածել այն։ Երեք հնգամյակների ընթացքում ծավալված սոցիալիստական մրցությունը հզոր խթան հանդիսացավ պլանների կատարման և գերակատարման համար։ Ով ուզում է, որ մեր սովետական Հայրենիքը է՛լ ավելի ծաղկի ու բարգավաճի, նա պետք է կատարի և գերակատարի իր պլանները։ Եկե՛ք, ծավալենք մրցությունը, ավելի շատ օճառ տանք երկրին։*

*Եվ Գևորգյանը առաջինը մտավ մրցության մեջ։ Որպես ավագ վարպետ խոստացավ ամսվա պլանը կատարել 110 տոկոսով։ Ահա արդեն երկրորդ ամիսն է, որ նա իր պլանները կատարում է 125—150 տոկոսով։*

*Ագիտատորի անձնական օրինակը ոգևորեց բոլորին։*

*Ցեխի բոլոր բանվորները մտան սոցիալիստական մրցության մեջ՝ ստանձնելով կոնկրետ պարտավորություններ։ Այդ աշխատանքը կատարվեց գործարանի պարտիական կազմակերպության ղեկավարու-*

թյամբ և օժանդակությամբ։ Այժմ արդյունքները ակնհայտ են։ Գործարանը առաջևից է գնում։ Պլանների կատարման ու գերակատարման շնորհիվ ՍՍՌՄ Սննդարդյունաբերության մինիստրության և ՀԱՄԿԽ-ի փոխանցիկ դրոշը նա ամուր պահում է իր ձեռքում։

Ագիտատոր Գևորգյանը միշտ տեղյակ է գործարանում կատարվող իրադարձություններին, նա ճանաչում է ամեն մի բանվորի և գիտի թե ինչպես են նրանք աշխատում։ Նա իր ագիտացիոն աշխատանքը չի սահմանափակում միայն թերթերի ընթերցանությամբ, կամ առանձին հարցերի մասսայականացմամբ։ Գևորգյանին կարելի է տեսնել ամենուրեք։ Ահա ընդմիջման ժամին, գործարանի բակում, ծառերի ստվերի տակ հավաքվել է բանվորների մի խումբ։ Նա(անբաժան ժպիտը դեմքին մոտենում է նրանց ու սկսում պատմել, թե ինչպես Արամ Մկրտչյանը 13 օրում 120 տոկոսով է կատարել իր ամսվա պլանը։ Շուշիկ Մնացականյանը, ( ՚անսպառ էներգիայով լեցուն այդ կինը, օրվա պլանը կատարում է 150 տոկոսով, Նինա Ալեխսյանը՝ 150—200 տոկոսով և այլն։



Բոլորը մրցում են իրար հետ՝ ընդհանուր վերելքի համար, քաջ գիտենալով, որ երբ ամեն մեկը կատարում ու գերակատարում է օրվա պլանը, ապա դրանով իսկ նախադրյալներ է ստեղծում գործարանի ամսվա, կամ տարվա պլանի կատարման ու գերակատարման համար։

Մենք գործարանում էինք, երբ վերջացավ աշխատանքային օրը։ Հաշվեցին թե տնտեսական օճառ պատրաստող ցեխը ինչպես է կատարել օրվա պլանը։ Պարզվեց, որ այն կատարվել է ավելի քան 150 տոկոսով։

Ստախանովուհի Վարդուշ Ուրֆալյանը 1932 թվից աշխատում է այս գործարանում։ Նա հիացմունքով է խոսում ագիտատոր Մուրադ Գևորգյանի մասին, որն օգնել է նրան մրցության մեջ մտնել, և այժմ իր ամսվա պլանը կատարում է 13—15 օրում։

Ընկ. Մուրադ Գևորգյանն ունի ագիտատորական աշխատանքի հարուստ փորձ։ Նրա թղթապանակի մեջ կարելի է գտնել դիագրամաներ, հնգամյա պլանի մասին Օրենքը, տեղեկություններ գործարանի պլանների կատարման ընթացքի վերաբերյալ, լավագույն ստախանովականների ա-

նումները, (տոցմրցման) պայմանագրերից քաղվածքներ և այլն։

Եվ այսպես, ամեն օր Մ. Գևորգյանը իր անձնվեր աշխատանքով և ագիտատորի իր պարզ ու կրակոտ խոսքով ոգևորում է իր ընկերներին և պայքար մղում հանուն նոր հնգամյա պլանի կատարման ու գերակատարման։

ՀԱՐ. ՓԱՐԻԿՅԱՆ

---

# ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Ագիտատորական կադրերի քաղաքական պատրաստության և դաստիարակության հիմնական ձևը հանդիսանում է ագիտկոլեկտիվը։ Ագիտատորների կոլեկտիվը կազմակերպվում է արտադրական ձեռնարկության, հիմնարկության, կոլխոզի, սովխոզի ու ՄՏ կայանի պարտիական կոմիտեին կից։ Գյուղական այն վայրերում, որտեղ պարտիական կազմակերպություններ չկան, ագիտկոլեկտիվները կազմակերպվում և անմիջական ղեկավարություն են ստանում պարտիայի շրջկոմի կողմից։ Այն հիմնարկություններում և ձեռնարկություններում, որտեղ կան սակավաթիվ ագիտատորներ, ստեղծվում են պարտիայի շրջկոմներին և քաղկոմներին կից փնջային ագիտկոլեկտիվներ։ Բնակչության մեջ աշխատող ագիտատորների համար կարելի է կազմակերպել ագիտկոլեկտիվներ այն ձեռնարկություններին ու հիմնարկություններին

կից, որոնք ամրացված են քաղաքական աշխատանք տանելու համար բնակչության տվյալ խմբին։ Ագիտկոլեկտիվում պետք է լինի 15—20 ագիտատոր։ Ձեռնարկության, հիմնարկության, կոլխոզի, սովխոզի և ՄՏ կայանի ագիտկոլեկտիվը, որպես կանոն, գլխավորում է պարտկազմակերպության քարտուղարը, իսկ պարտիայի շրջկոմներին կից ստեղծված ագիտկոլեկտիվներում ղեկավար առաջադրվում են պարտկազմակերպության ղեկավար ակտիվից առաջ քաշված ընկերներ։ Ագիտկոլեկտիվը աշխատում է պարտիական կոմիտեի կողմից հաստատված պլանով, նրա ժողովները (պարապմունքները) անց են կացվում ամսական 2—3 անգամ։

Մեր ագիտատորներից շատերը կարիք են զգում մեթոդական լուրջ օգնության։ Այդ պատճառով ագիտկոլեկտիվի աշխատանքի պլաններում պետք է նախատեսվի ագիտատորի նախապատրաստումը հերթական զրույցը անցկացնելու համար որպես հիմնական հարց։ Պարապմունքների ժամանակ ագիտկոլեկտիվի ղեկավարը պետք է ագիտատորներին պատմի ոչ միայն առաջիկա զրույցի բովանդակությունը, այլև պետք է մանրամասնորեն պարզաբանի, թե



ինչպես պետք է զրույցը անցկացնել, յուրաքանչյուր կոնկրետ դեպքում ագիտացիայի ինչպիսի մեթոդներ և ձևեր պետք է կիրառել, ինչպես օգտագործել ցուցադրական միջոցները, թվական տվյալները, ցիտատները, գեղարվեստական գրականությունը։ Ագիտկոլեկտիվի պարապմունքներում պետք է գործադրել ագիտատորների կողմից նախապատրաստված զրույցների պլանների վերլուծում և քննարկում, ագիտացիոն աշխատանքի զանազան ձևերի կիրառման փորձը և այլն։

Ագիտատորների անցկացրած զրույցները չպետք է կրեն վերացական բնույթ, ագիտացիան պետք է լինի գործուն և նպատակային։ Ահա թե ինչու անհրաժեշտ է, որպեսզի ագիտկոլեկտիվի պարապմունքների ժամանակ ագիտատորը զինված լինի տեղական փաստերով, պետք է իմանա ցեխի, կոլխոզային բրիգադայի կարիքները, պետք է ծանոթանա արտադրական պլանի կատարմանը, արտադրանքի նորմաների հարցին, վառելիքի ու հումքի խնայողությանը և այլն։ Ագիտատորների աշխատանքի վերահսկողությունը կազմակերպելու նպատակով, ագիտկոլեկտիվի ղեկավարը

պետք է սիստեմատիկաբար ներկա լինի ագիտատորների զրույցներին և այնուհետև այդ զրույցները քննության առնի ագիտկոլեկտիվում։ Բացի դրանից՝ պետք է պարբերաբար լսել ագիտատորների հաշվետվությունը իրենց աշխատանքի մասին։

Լավ է աշխատում Մարտունու շրջանի Ներքին Ալիչալու գյուղի ագիտկոլեկտիվը. նրանում կա 20 ագիտատոր, որոնց թվում ուսուցիչներ, գյուղատնտեսության մասնագետներ և կոլխոզային ակտիվ։ Բոլոր ագիտատորները ամրացված են կոլխոզի բրիգադներին ու օղակներին։ Ագիտկոլեկտիվի ղեկավար Մամիկոն Ասատրյանը պարբերաբար՝ շաբաթը մեկ անգամ, անց է կացնում ագիտկոլեկտիվի պարապմունքներ։ Այդ պարապմունքների ժամանակ ագիտատորներին ցույց են տրվում հերթական զրույցների թեմաներն ու նյութերը, մեթոդական ցուցումներ են տրվում, թե ինչպես պետք է օգտագործել զրույցների ժամանակ ցուցադրական միջոցները, այն է՝ աշխարհագրական քարտեզը, պլակատները և այլն։ Ռուստոմի կոլխոզնիկների դիմումը քննարկելու ժամանակ ագիտկոլեկտիվի ղեկավարը բացատրեց սոցիալիստական մրցության



նշանակությունը և մանրամասնորեն պատմեց ագիտատոր Սուրեն Նավոյանի աշխատանքի փորձը սոցիալիստական մրցությունը կազմակերպելու բնագավառում, որի բրիգադան գարնանացանի ժամանակ սիստեմատիկորեն գերակատարում էր արտադրանքի նորմաները։

Ագիտկոլեկտիվի աշխատանքի ճիշտ դրվածքի օրինակ ունենք մենք նաև Ալավերդու շրջանի Այգեհատ գյուղում։ Այստեղ ագիտկոլեկտիվի ղեկավարը հանդիսանում է կոլխոզի սկզբնական պարտկազմակերպության քարտուղար ընկ. Դալաքյանը։ Նա իր ագիտատորների նկատմամբ ցուցաբերում է մեծ հոգատարություն, ագիտատորներին մշտապես տալիս է մեթոդական ցուցումներ, թե ինչպես պետք է պատրաստվել զրույց անցկացնելու համար և ինչպես այդ զրույցի ժամանակ օգտագործել կոլխոզի առանձին բրիգադաների և օղակների աշխատանքի փորձից վերցված փաստերը և այլն։

Համեմատաբար լավ է կազմակերպված ագիտկոլեկտիվի աշխատանքը Երևան քաղաքի Ստալինյան ռայոնի Ձեթ-օճառ կոմբինատում։ Այդ ագիտկոլեկտիվում կա 31

ագիտատոր, որոնց թվում գործարանի ցեխերի պետեր, ինժեներներ և առաջավոր բանվորներ։ Ագիտկոլեկտիվի աշխատանքը ղեկավարում է գործարանի պլանավիկ Քնարիկ Հունանյանը։ Ագիտկոլեկտիվի աշխատանքը կառուցվում է նախօրոք կազմված ամսական պլանների հիման վրա, որոնց մեջ ագիտատորների համար նախատեսված են հերթական զրույցներ նյութերի վերաբերյալ կոնսուլտացիաներ, ագիտացիոն-մասսայական աշխատանքի փորձի փոխանակում, գործարանի կողմից պլանները կատարելու վերաբերյալ ագիտատորների խորհրդակցություններ և այլն։ Շնորհիվ ագիտկոլեկտիվի աշխատանքի ճիշտ դրվածքի, այդ գործարանի ագիտատորները ամեն օր ցեխերում բանվորների հետ անց են կացնում քաղաքական զրույցներ։ Կարող ցեխում ագիտատոր Ս. Բարսեղյանի, կաթսայական ցեխում ագիտատոր Մ. Գևորգյանի զրույցները բովանդակալից են և օգնում են պլանները ժամանակին կատարելու գործին։

Բացի ագիտկոլեկտիվների պարապմունքից՝ պետք է հաճախակի ագիտատորների շրջանային խորհրդակցություններ հրա-



վիրել։ Գյուղական վայրերում այդ խորհրդակցությունները կարելի է, հարմարությունից ելնելով, անցկացնել փնջային ձևով, ուր անհրաժեշտ է կազմակերպել որակյալ դասախոսների ու ղեկուցողների ելույթները՝ ՀամԿ(բ)Պ պատմության, ընթացիկ մոմենտի, միջազգային դրության ու այլ հարցերի վերաբերյալ։

Ագիտկոլեկտիվների ղեկավարների գաղափարական-քաղաքական մակարդակը բարձրացնելու համար պարտիայի շրջկոմներին ու քաղկոմներին կից պարբերաբար, ամսական 1—2 անգամ, հրավիրել սեմինարներ, որտեղ պետք է լսել զեկուցումներ և մասսայականացնել լավագույն ագիտկոլեկտիվների աշխատանքի փորձը։

Ագիտկոլեկտիվների աշխատանքների լավ կազմակերպումը հնարավորություն կտա մեզ մեր բոլշևիկյան ագիտացիան ամբողջովին ի սպաս դնել ստալինյան նոր հնգամյա պլանի անթերի կատարմանն ու գերակատարմանը։

Ա. ՔՈԹԱՆՋՅԱՆ
(ՀԿ(բ)Պ Կենտկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի ագիտացիայի սեկտորի վարիչ)

# ՏԵՍԱԿԱՆ ԿՈՆՖԵՐԱՆՍՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Պարտիական և սովետական կադրերի տեսական մակարդակը բարձրացնելու գործում մեծ նշանակություն ունեն լավ նախապատրաստված և բովանդակալից տեսական կոնֆերանսները: Տեսական կոնֆերանսների առավելությունները կայանում են նրանում, որ նրանցում որևէ տեսական թեմայի մասին ամեն մեկը ելույթով հանդես է գալիս, և այդ թեմայի ուսումնասիրման համար կարդում, ուսումնասիրում է օժանդակ լրացուցիչ գրականություն:

Տեսական կոնֆերանսների նախապատրաստված և բովանդակալից անցկացման համար, ինչպես շրջակտիվի, այնպես էլ գյուղական ղեկավար ակտիվի համար զգալի աշխատանք են կատարել Ղափանի շրջանի պարտիական կազմակերպությունները:

Պարտշրջկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժինը 1945 թվին և 1946 թվի առաջին 5 ամիսների ընթացքում կազմակերպել է 29 տեսական կոնֆերանս, որից



13-ը շրջանի պարտիական ու սովետական ղեկավար ակտիվի համար, 9-ը՝ հանքվարչության ինժեներա-տեխնիկական անձնակազմի և 7-ը՝ գյուղական ղեկավար ընկերների համար:

Տեսական կոնֆերանսը արդյունավետ անցկացնելու համար, մենք այն նախապատրաստում ենք 20—25 օր առաջ: Նախօրոք ընտրում ենք թեման, ցույց տալիս թեմայի մշակման համար պահանջվող գրականությունը և այդ մասին հաղորդում տեսական կոնֆերանսին մասնակցող պարտիական բոլոր կազմակերպություններին: Տեսական կոնֆերանսում զեկուցող և ելույթ ունեցող ընկերների համար, որպես օգնություն, պրոպագանդայի և ագիտացիայի բաժնում, ինչպես և պարտկաբինետում նախապես հրավիրում ենք կոնսուլտացիոն պարապմունքներ՝ հանձնարարված թեմայի շուրջը:

Կազմակերպված տեսական կոնֆերանսներում քննարկվել են՝ «Մի երկրում սոցիալիզմի կառուցման հնարավորության հարցը», «1905 թ. ռուսական առաջին ռևոլյուցիան և բոլշևիկների ու մենշևիկների

տակտիկական տարաձայնությունները», «Բոլշևիկների պարտիան ժողովրդական տնտեսության վերականգնման խաղաղ աշխատանքի անցնելու ժամանակաշրջանում (1921—1925 թ. թ.)», «Համաշխարհային երկրորդ պատերազմի ծագման և բնույթի մասին», «Ինդուստրացման և գյուղատնտեսության կոլեկտիվացման բոլշևիկյան քաղաքականության նշանակությունը մեր երկրի ակտիվ պաշտպանության նախապատրաստման գործում» և այլ թեմաների մասին։

Կազմակերպված տեսական կոնֆերանսներում ելույթ են ունեցել ավելի քան 125 ընկերներ։

Հիմնական զեկուցող և ելույթ ունեցող ընկերներից կարելի է նշել ընկ. ընկ. Ա. Կոստանդյանին, Գուրգեն Պետրոսյանին (հանքվարչության պարտկազմակերպություն), Սավադ Գրիգորյանին և Բողդան Ալեքսանյանին (շրջկոոպի կազմակերպություն), Աղամիր Աղամիրյանին (դպրոցական կազմակերպություն) և շատ ուրիշներ, որոնք քանիցս հաջող ելույթներ են ունեցել։ Ընկ. Ալիս Կոստանդյանը տեսական կոնֆերանսում ելույթ ունենալուց առաջ



ուսումնասիրել է Վ. Ի. Լենինի «Իմպերիալիզմը որպես կապիտալիզմի ամենաբարձր ստադիա» գիրքը, ընկեր Ստալինի «Լենինիզմի պատմական արմատները», ՀամԿ(բ)Պ.-ի համառոտ դասընթացի 9 գլուխները և այլ աշխատություններ։ Ընկ. Կոստանդյանը սկզբում շատ դժվարությամբ էր որևէ տեսական հարցի մասին ելույթ ունենում, իսկ այժմ մեծ ակտիվություն է ցույց տալիս կոնֆերանսների ժամանակ։

Շրջանի ղեկավար ակտիվից ընկ. Արտեմ Խաչատրյանը (Տաբակսիրիոյի կառավարիչ), ընկ. Հարություն Ղահրամանյանը (Հայաճի դիրեկտոր) ելույթ են ունեցել «Մի երկրում սոցիալիզմի կառուցման հնարավորության հարցի մասին» թեմայի առթիվ, ընկ. ընկ. Սարգիս Վարդանյանը (պարտշրջկոմի ռազմական բաժնի վարիչ), Արշակ Ղոնյանը (միջնակարգ դպրոցների կազմակերպություն) ելույթ են ունեցել «Ռուսական առաջին ռևոլյուցիայի ժամանակ բոլշևիկների և մենշևիկների տակտիկական տարաձայնությունները» թեմայի մասին և այլն։ Բացի նշված ընկերներից, տեսական կոնֆերանսներում հիմնական զեկուցումներով հանդես են եկել Կա-

պի բաժանմունքի պետ ընկ. Երեմ Աղամյանը, ժողդատավոր ընկ. Տիրակ Ավետիսյանը, Հանքվարչության հանքկոմի նախագահ ընկ. Մարգար Ստեփանյանը, գլխավոր էներգետիկ ընկ. Գուրգեն Պետրոսյանը, պարտբյուրոյի քարտուղար ընկ. Աշոտ Նուրիջանյանը և ուրիշները։

Դրական արդյունք են տվել Արծվանիկի և Շիկահողի ենթաշրջանների գյուղերի պարտիական կազմակերպությունների համար կազմակերպված տեսական կոնֆերանսները։

«Ինդուստրացման և գյուղատնտեսության կոլեկտիվացման բոլշևիկյան քաղաքականության նշանակությունը մեր երկրի ակտիվ պաշտպանության նախապատրաստման գործում» հարցի շուրջը Շիկահողում կազմակերպված տեսական կոնֆերանսում ելույթ են ունեցել Ծավի թերի միջնակարգ դպրոցի դիրեկտոր և քաղլսմբակի պրոպագանդիստ ընկ. Արտաշես Պետրոսյանը, Շիշկերտի գյուղսովետի նախագահ ընկ. Գրիգոր Գալստյանը, Ն. Հանդի դպրոցի դիրեկտոր ընկ. Սերգեյ Բաղդասարյանը և ուրիշները։

Պետք է նշել, որ տեսական կոնֆերանսները, չնչին բացառությամբ, անցնում են



շատ հետաքրքիր, որովհետև քննարկվող թեմաների առթիվ ելույթ ունեցողները նախօրոք լավ են նախապատրաստվում, ուսումնասիրում են թեմային վերաբերվող գրականությունը։

Սակայն, չնայած նշված դրական փաստերին, այնուամենայնիվ դեռևս շրջանի առանձին ղեկավար աշխատողներ, ինչպես նաև առանձին պարտիական կազմակերպություններ, անբավարար մասնակցություն են ունենում կազմակերպվող տեսական կոնֆերանսներին։

Շրջսովետի գործկոմից ընկ. Նզոր Գալստյանը և ընկ. Արսեն Գրիգորյանը խուսափում են տեսական հարցերի շուրջը ելույթներ ունենալուց։ Ցինքանկի, Փոստի, Տեղարդի և մի շարք այլ պարտիական կազմակերպությունների քարտուղարները վատ են նախապատրաստվում տեսական կոնֆերանսներին և չեն ապահովում իրենց կազմակերպությունների անդամների մասնակցությունը։

Կազմակերպված տեսական կոնֆերանսները անշուշտ մեծ չափով օգնում են բարձրացնելու մեր ակտիվի քաղաքական գիտե-

*լիքների մակարդակը։ Ահա թե ինչու այդ աշխատանքը առաջիկայում պետք է կազմակերպվի է՛լ ավելի լավ, է՛լ ավելի հետաքրքիր ու բովանդակալից։*

Մ. ԲԱԼԱՅԱՆ

(ՀԿ(բ)Պ Ղափանի շրջկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի վարիչ)

---

# ԳՅՈՒՂԻ ԱՊԱԳԱՆ

*Երեկ գիշեր ոլորապտույտ ճանապարհով սլանում էր մեր ավտոմեքենան։ Խավարի մեջ ահավոր ուրվականների նման հազիվ էին նշմարվում վիթխարի քարաժայռերը։ Անդնդախոր ձորի մեջ կատաղի մռնչյունով հոսում էր Արփա գետը։*

*Մի տեղ մեր մեքենան հանկարծ կանգ առավ։ Մեքենայի լույսի տակ ես տեսա ճանապարհի միջտեղում կանգնած մի ծերունու, որը մի ձեռքը հենել էր փայտին, մյուսը բարձրացրել օդում։ Երբ մեքենան կանգնեց, նա արագ մոտեցավ, զննող հայացքով նայեց ներս և չգտնելով իր ցանկացածը ուզում էր հեռանալ, բայց ես կանգնեցրի.*

*— Ո՞ւմ ես փնտրում, հայրիկ։*

*— Ղարիբի եմ սպասում, բալա ջան, էս օր պիտի գար, ուշացավ...*

*Ես ուզում էի էլի հարցեր տալ, պարզելու*

համար՝ թե ո՞վ է այդ «ղարիբը», որտեղի՞ց է նա գալու, ո՞վ է նրան սպասողը, բայց ծերունին շտապ հեռացավ, իսկ մեքենան շարժվեց առաջ։

Հաջորդ օրը մենք եղանք Միկոյանի շրջանի Մալիշկա գյուղում։

Մալիշկան նստած է լեռան կիսատափարակ լանջին։ Անծանոթին կարող է տարօրինակ թվալ, որ մարդիկ ներքևում տարածված հսկայական հարթավայրը թողած, եկել թառել են լեռների փեշերին։ Սակայն այդպես է թվում միայն առաջին հայացքից։ Իրականում, իսկապես, խելացի մարդիկ են եղել այս գյուղի հիմնադիրները։ Նրանք եկել են այստեղ, տեսել են այս հարթավայրի միջով հոսող ջուրը, բայց չեն ցանկացել իջնել նրա ափին, այլ ձգտել են գտնել նրա ակունքները։ Եվ գտել են ու այնտեղ էլ դրել իրենց տան առաջին քարը։ Դա եղել է շատ տարիներ առաջ։ Տասնամյակներ շարունակ խոխոջել է այս լեռներից բխող վճիտ ու սառնորակ աղբյուրների ջուրը։ Իսկ լեռների փեշերին բարձրացել է գյուղը։ Ու որքան ավելի է մեծացել գյուղը, այնքան ավելի է գեղեցկացել նրա ոտքերի տակ փռված հարթավայրը՝ զարդարվելով մեղրա-



համ խաղողի այգիներով, ծառերով ու կանաչով։

— Այս տարի բերքն առատ է լինելու,— ասում է մեզ ուղեկցող կոլտնտեսական Սիրական Ասատրյանը։ Նա այս գյուղի պարտկազմակերպության քարտուղարն է։

Այգիներում այժմ մեծ աշխատանքներ են կատարվում. մի տեղ սածիլանոցներն են կարգի բերվում, մի այլ տեղ՝ մշակվում են խաղողի այգիները, կոլխոզնիկների մի խումբ զբաղված է բանջարանոցներով, և այսպես, ամենուրեք եռում է կյանքը...

...Այգիները կիսող ճանապարհով անցավ մի մարդատար ավտոմեքենա և ապա կանգ առավ դպրոցի առաջ։

— Ինժեները եկավ,— ասաց Սիրականը։

Դեռ անցած ձմեռը կոլխոզնիկները որոշել էին դպրոցի մոտ, Ազիզբեկով տանող ճանապարհի վրա աղբյուր-հուշարձան կառուցել։ Եվ ահա նրանց հրավերով շրջկենտրոնից եկել էր ինժեները, բերելով աղբյուրի կառուցման նախագիծը։

— Թող անցորդներն էլ խմեն մեր սառը ջրից,— ասաց մեր ուղեկիցը և մի պահ լռելուց հետո, ավելացրեց,— միայն դա

չէ մեր հողը, մենք շատ բան ունենք անելու...

— Հետաքրքիր է, ի՞նչ եք նախագծում անելու, պատմեցեք, խնդրեմ։

Կարծես հենց դրան էր սպասում Սիրականը։ Նրա դեմքը սովորականից ավելի պայծառացավ և աչքերի մեջ փայլեց երջանկության կայծը։ Նա մի հայացքով չափեց գյուղը, նայեց կանաչազարդ այգիներին, ապա աչքերն ուղղեց դեպի հեռուները, ասես այնտեղ փնտրելով մեզ հետաքրքրող հարցերի պատասխանը։

— Դուք հարցնում եք ինձ. ի՞նչ եք նախագծում անելու. մի խոսքով ուզում եք, որ պատմեմ այն մասին, թե ինչ է լինելու մեր գյուղը հինգ տարի հետո։ Ես կարող եմ ասել, որ նա հինգ տարի հետո զգալի չափով կփոխի իր դեմքը։ Նախ և առաջ մեր այգիներից և դաշտերից ստացած առատ բերքը հնարավորություն կտա մեր կոլխոզնիկներին՝ բազմաթիվ նոր, լուսավոր ու մաքուր տներ կառուցել։ Գործի կգցվի բաղնիքը, կկառուցվի դպրոցական մի նոր շենք ևս։ Մեր խաղողի այգիները կավելացվեն 125 հեկտարով, կտնկվեն հազարավոր նոր ծառեր։ Նկատի ունենալով մեղվաբուծության շահավետությունը, մենք որոշել ենք կառուցել երկու մեղվանոց՝ 50 մետր երկարությամբ։



— Ա՞յ, տեսնո՞ւմ եք այն երկու սարերը,— ձեռքը մի կողմ պարզելով ասում է Սիրականը,— նրանցից մեկը կոչվում է Նավլար, մյուսը՝ Աղդաղ։ Նրանց միջև փռված է մի գեղեցիկ հարթավայր։ Մենք ուզում ենք այնտեղ ջուր բերել, գոմեր կառուցել և ապահով ձմեռանոց ստեղծել մեր անասունների համար։

Ս. Ասատրյանի պատմությամբ կլանված, մենք քայլում էինք այգիների միջով և կանգ առանք միայն այն ժամանակ, երբ հասանք գյուղ։ Այստեղ մենք ականատես եղանք մի այսպիսի տեսարանի. մի ծերունի սայլի վրա նստած ուզում էր անցնել գյուղամիջից անցնող հեղեղատով։ Նրա սայլը հասել էր հեղեղատի կեսին, թաղվել պղտոր ջրի մեջ և չնայած ծերունու բոլոր ճիգերին, առաջ չէր գնում։ Ետ դառնալը նույնպես անհնար էր։ Նկատելով այդ, մարդիկ արագ օգնության հասան և մեծ դժվարությամբ

սայլը համեցին ցեխաջրից։ Ինչպես երևում էր, դա առաջին դեպքը չէր։ Ծերունին հուզված շշնջաց, բայց այնպես, որ լսելի լիներ մեզ համար.

— Կամուրջ է հարկավոր, կամուրջ։

Ես նայեցի Սիրականի դեմքին, իսկ նա բարձրաձայն հայտարարեց.

— Ա՛յդ էլ կլինի։

Մի պատանի թռավ սայլի վրա և հարվածելով եզներին հեռացավ։ Իսկ ծերունին Սիրականի խոսքերից գոտեպնդված մոտեցավ մեզ։ Ես նայեցի նրա ծանոթ թվացող դեմքին, փակույն չկարողանալով մտաբերել, թե որտեղ եմ տեսել նրան։ Բայց ևս մի քանի րոպե, և մենք ճանաչեցինք իրար։ Ինչպիսի՜ զուգադիպություն։ Պարզվեց, որ դա այն ծերուկն էր, որը նախորդ գիշեր կանգնել էր մեր ճանապարհի մեջտեղում՝ մի ձեռքը հենած փայտին, մյուսը՝ բարձրացրած օդում։

— Ո՞վ էր այն ղարիբը, որին սպասում էիր դու,— շտապեցի հարցնել ես։

— Որդի՛ս,— պատասխանեց նա, և իր



արժանապատվությունը ճանաչող մարդու հպարտությամբ ավելացրեց.— Նա վերադարձավ բանակից։ Այսօր իմ ղոնաղն եք, գնա՛նք,— այս վերջին բառը նա արտասանեց այնպիսի վճռականությամբ, որ այլևս դժվար էր հրաժարվելը...

Գ. ՀԱՅՐՅԱՆ

—❤—

# ԱՐԵԳԱԿԻ ԵՎ ԼՈՒՍՆԻ ԽԱՎԱՐՈՒՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Արեգակի և լուսնի խավարումներն այնպիսի ուշագրավ ու հետաքրքրական երևույթներ են, որ մարդիկ ամենավաղ ժամանակներից սկսած մեծ հետաքրքրությամբ զբաղվել են դրանց ուսումնասիրությամբ։

Արեգակի խավարումը տեղի է ունենում այն դեպքում, երբ նրա տեսանելի սկավառակը մեր նկատմամբ ծածկվում է լուսնի տեսանելի սկավառակով և մենք արեգակի լուսավոր սկավառակի փոխարեն տեսնում ենք լուսնի խավար սկավառակը, որը կարճ ժամանակով փակում է արեգակից դեպի մեզ եկող ճառագայթների ճանապարհը։

Այդ առաջանում է այն ժամանակ, երբ երկիրն արեգակի շուրջը և լուսինը երկրի շուրջը բոլորվելիս, երբեմն այդ երեք մարմիններն իրար նկատմամբ էկլեպտիկայի (խավարածրի) հարթությունում գտնվում են



մի ուղիղ գծի վրա, այնպիսի դասավորությամբ, որ լուսինը գտնվում է արեգակի և երկրի միջև, այսինքն՝ նորալուսնի ժամանակ։

Ինչո՞ւ արեգակի խավարումը կարող է տեղի ունենալ միայն արեգակի, լուսնի և երկրի նման դասավորության դեպքում. Որովհետև լուսինը լինելով խավար, անթափանցիկ մարմին, միայն այդ դեպքում կարող է փակել արեգակից դեպի մեզ եկող ճառագայթների ճանապարհը, որի հետևանքով երկրի որոշ մասը, շատ կարճ ժամանակով, ամբողջովին, կամ մասամբ, զրկվում է արեգակի լույսից և մեզ թվում է, թե արեգակը խավարեց, այնինչ, իրականում, արեգակի հետ տվյալ մոմենտին ոչ մի փոփոխություն չի կատարվում։

Ապա ի՞նչպես է, որ լուսինը լինելով անհամեմատ փոքր մարմին, այնուամենայնիվ կարողանում է ծածկել իրենից չափազանց մեծ արեգակին։

Արեգակը լուսնից շատ մեծ է, բայց մյուս կողմից էլ մեզնից շատ մեծ հեռավորության վրա է գտնվում, քան լուսինը։ Արեգակի և երկրի միջև հեռավորությունը 149 միլիոն 500 հազար կիլոմետր է, իսկ

լուսնի և երկրի միջև հեռավորությունը 348.500 կիլոմետր, ուրեմն արեգակը մեզնից մոտավորապես 400 անգամ ավելի հեռու է քան լուսինը: Այդ պատճառով էլ արեգակի և լուսնի տեսանելի սկավառակները մեզ համար գրեթե իրար հավասար են երևում: Բայց քանի որ արեգակի և լուսնի հեռավորությունները երկրի նկատմամբ հաստատուն չեն, այսինքն մոտենում և հեռանում են, դրա հետևանքով էլ արեգակի և լուսնի տեսանելի սկավառակները նույնպես երբեմն մեկը մյուսից աննշան չափով մեծ կամ փոքր են երևում, երբեմն էլ իրար հավասար:

Ամիսը մեկ անգամ լինում է նորալուսին և արեգակի խավարումը տեղի է ունենում նորալուսնի ժամանակ. ապա ինչպե՞ս է, որ յուրաքանչյուր ամիս նորալուսնի ժամանակ արեգակի խավարում տեղի չի ունենում:

Ամեն ամիս, կամ ամեն նորալուսնի ժամանակ արեգակի խավարում տեղի չի ունենում այն պատճառով, որ լուսնի և երկրի շարժման օրբիտների հարթությունները չեն համընկնում, այլ կազմում են 5 աստիճան 9 րոպե թեքվածության անկյուն,



որի պատճառով լուսնի ստվերը երկրի նկատմամբ մի փոքր դեպի հյուսիս, կամ դեպի հարավ է ընկնում և ամեն նորալուսնի ժամանակ արեգակի խավարում տեղի չի ունենում: Իսկ եթե երկրի և լուսնի օրբիտների հարթությունները համընկնեին, այսինքն թեքվածություն չունենային, այն դեպքում, ամեն ամիս, նորալուսնի ժամանակ կլիներ արեգակի խավարում, իսկ լիալուսնի ժամանակ՝ լուսնի խավարում:

Արեգակի խավարումները լինում են երեք տիպի՝ լրիվ, օղակաձև և մասնակի:

Արեգակի լրիվ խավարում լինում է այն ժամանակ, երբ լուսնի տեսանելի սկավառակը փոքր չափով մեծ է լինում արեգակի տեսանելի սկավառակից: Լրիվ խավարման ժամանակ տիրում է կարճ գիշեր, երկնակամարում սկսում են երևալ աստղերը և մոլորակները: Արեգակի լրիվ խավարումը երևում է ոչ բոլոր տեղերից, այլ միայն երկրի որոշ շերտից: Խավարման շերտի լայնությունը լինում է 100—200 կիլոմետր, իսկ երկարությունը անհամեմատ շատ: Խավարումը տևում է շատ կարճ՝ ամենաշատը 7 րոպե 40 վայրկյան:

Արեգակի օղակաձև խավարում տեղի է ունենում այն դեպքում, երբ խավարման

ժամանակ լուսնի տեսանելի սկավառակը փոքր է լինում արեգակի տեսանելի սկավառակից։ Լուսինը մեր նկատմամբ արեգակի առջևից անցնելիս, ծածկում է արեգակի միայն կենտրոնական մասը, իսկ եզրերը մնում են լուսավորված։ Դրա համար էլ այդպիսի խավարումը կոչվում է օղակաձև։

Արեգակի խավարումը մասնակի է համարվում այն ժամանակ, երբ արեգակի տեսանելի սկավառակի միայն որոշ մասն է ծածկվում լուսնով։

Արեգակի խավարումներ տեղի են ունենում տարվա մեջ ամենաքիչը՝ երկու և ամենաշատը հինգ անգամ։

Ինչպե՞ս է տեղի ունենում լուսնի խավարումը։

Երկիրն արեգակի շուրջը և լուսինը երկրի շուրջը բոլորվելիս, երբեմն իրար նկատմամբ այնպես են դասավորվում, որ էկլեպտիկայի (խավարածրի) հարթության մեջ գտնվում են մի ուղիղ գծի վրա։ Արեգակը, երկիրը և լուսինը եթե դասավորվեն մի ուղիղ գծի վրա (նշված կարգով) կարող է տեղի ունենալ լուսնի խավարում միայն այն ժամանակ, եթե լուսինը գտնվի արեգակի նկատմամբ



երկրի հակառակ կողմում, այսինքն լիալուսնի ժամանակ, որովհետև հենց այդ դեպքում է լինում լիալուսին։ Քանի որ երկիրը սեփական լույս չունեցող, խավար, անթափանցիկ գունդ է, միշտ դեպի Արեգակը նայող կողմն է լուսավորվում, իսկ հակառակ կողմում ձգվում է բավական մեծ, կոնաձև ստվեր, որի երկարությունը հավասար է մոտ մեկ միլիոն 400 հազար կիլոմետրի, իսկ լուսինը երկրի շուրջը բոլորվելիս ունենում է ամենաշատը, մոտավորապես 400 հազար կիլոմետր հեռավորություն, հետևապես լուսինը երկրի շուրջը բոլորվելու ճանապարհին, լիալուսնի ժամանակ կարող է ծածկվել երկրի ստվերով և տեղի կունենա լուսնի խավարում։

Լուսինը մոտավորապես ամիսը մեկ անգամ է բոլորվում երկրի շուրջը և ամիսը մեկ անգամ էլ առաջանում է լիալուսին, հարց է ծագում ինչու՞ ամեն ամիս լիալուսնի ժամանակ լուսնի խավարում տեղի չի ունենում։

Եթե լուսնի օրբիտի հարթությունը և երկրի օրբիտի հարթությունը (էկլեպտիկայի հարթությունը) համընկնեին, ապա յուրաքանչյուր ամիսը մեկ անգամ լիալուսնի ժամանակ տեղի կունենար լուսնի խավա-

րում, բայց տեղի չի ունենում, այն պատճառով, որ երկրի և լուսնի օրբիտների հարթությունները, ինչպես ասել ենք, չեն համընկնում, այլ իրար հետ կազմում են 5 աստիճան 9 րոպե թեքվածության անկյուն: Թեքության հետևանքով լուսինը երկրի ստվերի նկատմամբ մի փոքր դեպի հյուսիս, կամ դեպի հարավ է անցնում, և չի ընկնում ստվերի մեջ: Տարվա մեջ, սովորաբար, առաջանում է լուսնի խավարում 1—2 անգամ, հազվագյուտ դեպքում՝ 3, որոշ տարիներում էլ բոլորովին չի լինում:

Լուսնի խավարումը լինում է երկու տեսակ՝ լրիվ և մասնակի: Լուսնի լրիվ խավարում տեղի է ունենում այն ժամանակ, երբ լուսինը ամբողջությամբ ծածկվում է երկրի լրիվ ստվերով, իսկ մասնակի խավարում՝ երբ լուսնի տեսանելի սկավառակի միայն որոշ մասն է ծածկվում երկրի լրիվ ստվերով:

Ի տարբերություն արեգակի, լուսնի խավարումն առանձնահատուկ է այն տեսակետից, որ երևում է, ոչ թե երկրի որոշ մասերից, այլ այն բոլոր վայրերից, որտեղից հորիզոնում երևում է լուսինը:

1946 թվականին եղել է և լինելու է 6



խավարում, որից 4-ը արեգակի մասնակի խավարում՝ հունվարի 3-ին, մայիսի 30-ին, հունիսի 29-ին ու նոյեմբերի 23-ին և երկու լուսնի լրիվ խավարում՝ հունիսի 14-ին և դեկտեմբերի 8-ին:

Երկարատև դիտումների և ուսումնասիրությունների միջոցով, դեռ վաղ ժամանակներից սկած մարդիկ հայտաբերել են, որ արեգակի և լուսնի խավարումները տեղի են ունենում ոչ թե պատահական կերպով, այլ որոշակի պարբերությամբ ու օրինաչափությամբ: Մեզնից մոտ 4.500 տարի առաջ, բաբելացիները հայտաբերել էին խավարումների ժամանակը նախապես որոշելու եղանակը և գտել, որ արեգակի և լուսնի խավարումները կրկնվում են 18 տարի 11 օր 8 ժամ պարբերաշրջանում, որն անվանել են «Սարոս»: Արեգակի, երկրի և լուսնի շարժումներն այնպես են կատարվում, որ հանգույցի նկատմամբ նույն դասավորությունն են ունենում յուրաքանչյուր 18 տարի 11 օր 8 ժամը մեկ անգամ: Եթե խավարումների կրկնման պարբերաշրջանի ընթացքում 4 նահանջ տարվա փոխարեն 5 նահանջ տարի է լինում, ապա պետք է պարբերաշրջա-

նը, այսինքն «Սարոսը» 18 տարի 11 օր
8 ժամի փոխարեն հաշվել՝ 18 տարի 10
օր 8 ժամ։ «Սարոսի» ընթացքում տեղի է
ունենում մոտավորապես 70 խավարում,
որից՝ 41 արեգակի և 29 լուսնի։ «Սարոսի»
միջոցով հեշտությամբ կարելի է որո-
շել ցանկացած թվականի խավարումների
ժամանակը։ Բավական է վերցնել արեգակի
կամ լուսնի խավարումներից որևէ մեկի
ժամանակը և դրան գումարել 18 տարի 11
օր 8 ժամ։ Ստացված պատասխանը ցույց
կտա հաջորդ խավարման ժամանակը, իսկ
հանելու դեպքում կստանանք նախորդ
անգամ տեղի ունեցած խավարման ժամա-
նակը։ Օրինակ՝ 1936 թ. հունիսի 19-ին
տեղի ունեցած արեգակի լրիվ խավարումը
կրկնվելու է 1954 թվականի հունիսի 30-ին։
Նույն եղանակով որոշում են նաև լուսնի
խավարումների ժամանակը։ 1946 թ. հու-
նիսի 14-ին տեղի ունեցած լուսնի լրիվ
խավարումը 1928 թ. հունիսի 3-ին տեղի
ունեցած խավարման կրկնությունն էր։

Նախապես հնարավոր է հաշվել հարյու-
րավոր տարիների ընթացքում տեղի ունե-
նալիք արեգակի և լուսնի խավարումների
ճշգրիտ ժամանակը նույնիսկ մեկ հար-
յուրերորդական վայրկյանի ճշտությամբ։



Հնում, և այժմ էլ որոշ սնահավատու-
թյուններով նախապաշարված մարդիկ, խա-
վարումները համարում էին որպես հրաշք և
կապում էին այս կամ այն աղետի՝ պա-
տերազմի, ջրհեղեղի, երկրաշարժի, համա-
ճարակ հիվանդությունների, սովի և այլ
աղետների հետ։

Գիտությունը վաղուց արդեն հերքել է
սնահավատություններից առաջացած այդ
անհեթեթությունները և տվել ճշգրիտ պա-
տասխան բնության այդ երևույթներին։

Հ. ԲԱԴԱԼՅԱՆ
(Ավագ գիտական աշխատող)

## ՄՏՔԵՐ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅԱՆ ԵՎ ՍՏԱԽԱՆՈՎՅԱՆ ՇԱՐԺՄԱՆ ՄԱՍԻՆ

*Սոցիալիզմը ո՛չ միայն չի ոչնչացնում մրցակցությունը, այլ ընդհակառակը, առաջին անգամ հնարավորություն է ստեղծում իրոք լայնորեն կիրառելու այն, իրոք մասսայական չափով, իրոք աշխատավորների մեծամասնությունն ներգրավելու այնպիսի աշխատանքի ասպարեզ, որտեղ նրանք կարող են իրենց երևան բերել, ծավալել իրենց ընդունակությունները, դրսևորել տաղանդներ, որոնք ժողովրդի մեջ անսպառելի աղբյուրի են նման և որոնց կապիտալիզմը ճմլել, ճնշել, խեղդել է հազարներով և միլիոններով։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ

*...Մրցությունը սոցիալիզմի շինարարության կոմունիստական մեթոդն է՝ աշխատավորական միլիոնավոր մասսաների մաքսիմալ ակտիվության հիմունքներով։ Իրականում—մրցությունն այն լծակն է հանդի-*



*սանում, որի միջոցով բանվոր դասակարգը կոչված է հիմնովին վերակառուցելու երկրի ամբողջ տնտեսական և կուլտուրական կյանքը սոցիալիզմի հիման վրա։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ

*Մրցության մեջ ամենից նշանակալիցն այն է, որ նա արմատական հեղաշրջում է կատարում աշխատանքի վերաբերյալ մարդկանց հայացքներում, որովհետև նա աշխատանքը ամոթալի և ծանր բեռից, որպիսին այն համարվում էր առաջներում, վերածում է* պատվի *գործի,* փառքի *գործի,* արիության և հերոսության *գործի։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ

*Ո՞րն է ստախանովյան շարժման նշանակությունը։*

*Նախ և առաջ այն, որ նա արտահայտում է սոցիալիստական մրցության նոր վերելքը, սոցիալիստական մրցության նոր, ավելի բարձր էտապը....*

*...Նրա նշանակությունը նաև այն է, որ նա նախապատրաստում է սոցիալիզմից կոմունիզմին անցնելու պայմանները։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ




## ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅԱՆ ԵՎ ՍՏԱԽԱՆՈՎՅԱՆ ՇԱՐԺՄԱՆ ՄԱՍԻՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Ի՞նչպես կազմակերպել մրցակցությունը. *Հատոր 22-րդ, էջ՝ 196—209. Պետհրատ, Երևան, 1932 թ.։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Խորհրդային իշխանության ներքական խնդիրները. *Նույն հատորը, էջ՝ 565—596։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Մրցությունը և մասսաների աշխատանքային ոգևորությունը. *«Խորհրդային Հայաստան», 1929 թ., մայիսի 25։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— *Ճառ*, արտասանած ստախանովականների համամիութենական առաջին խորհրդակցությանը. *Հայպարտհրատ, 1935 թ., Երևան։*

Վ. Մ. ՄՈԼՈՏՈՎ.— Ստախանովական շարժման և բանվոր դասակարգի կուլտուրականության մասին. *Պարտհրատ, 1935 թ., Երևան։*

Գ. Կ. ՕՐՋՈՆԻԿԻՁԵ.— Մեծ Ստալինի գլխավորած



ստախանովյան շարժումը կընթանա յորդողնանց քայլերով. *Պարտհրատ, 1935 թ., Երևան։*

Լ. Մ. ԿԱԳԱՆՈՎԻՉ.— Ճառ. արտասանած ստախանովական բանվորների և բանվորուհիների համամիութենական առաջին խորհրդակցությանը. *Պարտհրատ, 1935 թ., Երևան։*

Ա. Ի. ՄԻԿՈՅԱՆ.— Ճառ. արտասանած ստախանովական բանվորների ու բանվորուհիների համամիութենական առաջին խորհրդակցությանը. *Պարտհրատ, 1935 թ, Երևան։*

Կ. Ե. ՎՈՐՈՇԻԼՈՎ.— Ճառ. արտասանած ստախանովական բանվորների ու բանվորուհիների համամիութենական առաջին խորհրդակցությանը. *Պարտհրատ, 1935 թ., Երևան։*

Ա. Ա. ԱՆԴՐԵԵՎ.— Ստախանովյան շարժումը և մեր խնդիրները. *Հայպարտհրատ, 1936 թ.։*

Ա. Ա. ԺԴԱՆՈՎ.— Ստախանովականները արտադրության իսկական բոլշևիկներ են. *Հայպարտհրատ, Երևան։*

Օրենք ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման 1946—1950 թ. թ. հնգամյա պլանի մասին. *Հայպետհրատ, 1946 թ., Երևան։*

Սոցիալիստական մրցությունն հանուն նոր հնգամյա պլանի հաջող կատարման. *«Բոլշևիկ» № 7—8, 1946 թ., էջ՝ 5—11։*

Կիրովի անվան Մակեևկայի մետալուրգիական գործարանի կոլեկտիվի դիմումը. *«Կոմունիստ», 16 մայիսի, 1946 թ.։*

Նոր հնգամյակը համաժողովրդական գործ է. *«Պրավդայի» առաջնորդողը արտատպված «Կոմունիստի» մայիսի 16-ի համարում, 1946 թ.։*

Օրեխովոյի Աշխատանքային Կարմիր Դրոշի շքանշանակիր բամբակագործական կոմբինատի կոլեկտիվի դիմումը. *«Սովետական Հայաստան», 24 մայիսի, 1946 թ.։*

Ածխահատների և տեխնիկագործների նոր նախաձեռնությունը. *«Պրավդայի» մայիսի 22-ի առաջնորդողը, արտատպված «Սովետական Հայաստանի» մայիսի 24-ի համարում, 1946 թ.։*

Հյուսիսային-Դոնեցյան Երկաթուղու կոլեկտիվի դիմումը. *«Սովետական Հայաստան», 28 մայիսի, 1946 թ.։*

Համաժողովրդական պայքար նոր հնգամյակի հաջողության համար. *«Պրավդայի» առաջնորդողը, արտատպված «Սովետական Հայաստանի» մայիսի 28-ի համարում, 1946 թ.։*

Լենինգրադի Լենինի շքանշանակիր «Սկորոխոդ» կոշկեղենի ֆաբրիկայի, Մոսկվայի Աշխատանքային Կարմիր Դրոշի շքանշանակիր «Կրասնայա Շվեյա» № 16 կարի գործարանի, Մոսկվայի Թելմանի անվան



կաշեգործարանի և Մոսկվայի Նոգինի անվան զույպայի ֆաբրիկայի կոլեկտիվների դիմումը. *«Սովետական Հայաստան» 28 մայիսի, 1946 թ.։*

Ուրալի Լենինի շքանշանակիր, Կարմիր Դրոշի շքանշանակիր և Աշխատանքային Կարմիր Դրոշի շքանշանակիր Ս. Օրջոնիկիձեի անվան ծանր մեքենաշինության գործարանի աշխատողների դիմումը. *«Սովետական Հայաստան», 31-ը մայիսի, 1946 թ.։*

ՍՍՌՄ Սննդարդյունաբերության մինիստրության Վեսելո-Պոդոլյանսկի շաքարի կոմբինատի և Մոսկվայի «Կրասնի Օկտյաբր» հրուշակեղենի ֆաբրիկայի կոլեկտիվների դիմումը. *«Սովետական Հայաստան», 31 մայիսի, 1946 թ.։*

Կրեմատորսկի ցեմենտի, Գուսևսկի Ձերժինսկու անվան ապակու, Մոսկվայի ռուբերոյիդի և Կուշինսկի աղյուսի գործարանների կոլեկտիվների դիմումը. *«Սովետական Հայաստան», 1 հունիսի, 1946 թ.։*

Կրասնոդարի երկրամասի Պավլովի շրջանի «Կոմսոմոլեց» գյուղատնտեսական արտելի կոլխոզնիկների և կոլխոզնիկուհիների, տրակտորիստների և կոմբայնավարների դիմումը. *«Սովետական Հայաստան» 18 հունիսի, 1946 թ.։*

Ուկրաինական ՍՍՌ Ստալինոյի մարզի Սելիդովսկի ՄՏ կայանի կոլեկտիվի դիմումը. *«Սովետական Հայաստան» 18 հունիսի, 1946 թ.։*

Կոլխոզային գյուղի առաջավոր մարդկանց կոչը. *«Պրավդայի» առաջնորդողը արտատպված «Սովետական Հայաստանի» հունիսի 18-ի համարում, 1946 թ.։*

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Պատասխանատու խմբագիր՝
Ս. ԱՐԵՇՅԱՆ

Խմբագրության հասցեն.— Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և Ագիտացիայի բաժին, Հեռ. 23—30։

ՎՖ 01271, պատվեր № 730, տիրաժ 10.000
Ստորագրված է տպագրության 26/VI 1946 թ.

ՀՍՍՌ Մինիստրների Սովետին կից Պոլիգրաֆ. և Հրատ. վարչ. № 2 տպարան, Երևան